# Հ. Յ. Դ.

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՎԱԼՊԱՌԻԼԻ Հ. Յ. Դ. Արամ խումբի ժողովը այս Կիրակի առաւօտ ժամը 10ին, սովորական հաւաքատեղին : Պարտաւորիչ ներկայութիւն :

Հ. Յ. Դ. ԱՐԵՒՄՏԵԱՆ ԵՒՐՈՊԱՅԻ Կ. Կոմիտէն ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ հետեւեալ շրջանի ընկերները :

ՎԱԼԱՆՍ — 2 Մարտ, Չորեքշաբթի գիշեր :

ԿՐԸՆՈՊԼԸ — 3 Մարտ, Հինգշաբթի գիշեր :

ՄԱՐՍԷՅԼ — 6 Մարտ, Կիրակի կէսօրէ վերջ :

Սոյն ժողովներուն ներկայ կ'ըլլայ Կ. Կ.ի ներկայացուցիչը :

ՓԱՐԻԶ — Հ. Յ. Դ. Ռոստոմ խումբի ժողովը այս Շաբաթ, ժամը 20.30ին, սովորական հաւաքատեղին :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տարաբախտ Միշէլ Պաղտասարեանի ընտանիքը պարտք կը համարի մասնաւոր շնորհակալութիւն յայտնել Սեւրի Սամուէլ Մուրատեան վարժարանի տեսչութեան, Մխիթարեան Հայրերուն, Նախկին Սանուց Միութեան եւ աշակերտներուն, որոնք այնքան յուզումով իրենց մասնակցութիւնը բերին երիտասարդ Միշէլի յուղարկաւորութեան :

## ԸՆԴՀ. ԺՈՂՈՎ

Կրընոպլի Հայ Ազգ. Եկեղեցական Միութեան վարչութիւնը, ընդհ. ժողովի կը հրաւիրէ միութեան բոլոր անդամները, որոնք 1959, իրենց տարեվճարը վճարած են: Ժողովը տեղի պիտի ունենայ Մարտ վեցին, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, Քաֆէ տը Քոմէրսի վերնայարկը, Փըլաս Կրանէտ :

ՕՐԱԿԱՐԳ — Ա) Զեկուցում եւ հաշուետուութիւն : Բ) Եկեղեցւոյ եւ ընթացիկ հարցեր: Գ) Վարչութեան ընտրութիւն :

Վերոյիշեալ Թուականին մեծամասնութիւն չգոյանալու պարագային, կը յետաձգուի, Մարտ 13ին, ուր ներկաներու թիւը մեծամասնութիւն կը նկատուի :

Ի դիմաց Կրընոպլի Հայ Ազգ. Եկեղեց. Միութեան վարչութեան :

(Ատենադպիր)

**ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ**

ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

ԿԻՐԱԿԻ, 20 ՄԱՐՏ, ԺԱՄԸ 16

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

« ՎԱՐԴԱՆԱՆՑ »Ը

Կը ներկայացուի Առնուվիլի Հ. Յ. Դ. Նոր Սերունդին կողմէ :

Ապրիլ 3ին

×

Նախկին Սամաթիացիներու տարեկան պարահանդէսը տեղի պիտի ունենայ Ապրիլ 10ին, Կիրակի, Ամպասատէօրի շքեղ սրահներուն մէջ: Մանրամասնութիւնները յաջորդով :

×

ԴՊՐՈՑԱՍԷՐԻ

Գեղարուեստական ցերեկոյթը

ԱՊՐԻԼ 3ԻՆ

×

ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ Անկէնի մասնաճիւղին տարեկան հանդէսը

ՄԱՅԻՍ 8ԻՆ (Անկէն)

## ՓԵՏՐՈՒԱՐ 18Ը

### ԻՍԻԻ ՄԷՋ

Փետրուար 18ի համաժողովրդական ապստամբութեան 39րդ տարեդարձը կը տօնուի գինեձօն – խնճոյքով, Իսիի «Խըրիմեան» դպրոցին մէջ, Մարտ վեցին, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 15ին :

Հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Փարիզի Շրջ. կոմիտէին :

Կը նախագահէ ընկ. ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ

Կը խօսի ընկ. ԺԻՐԱՅՐ ՄԻՐԻՃԵԱՆ

Առատ կերուխում 6 Ն. Ֆ.ով :

×

### ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Փետրուար 18ի համաժողովրդական ապստամբութեան 39րդ տարեդարձը կը տօնուի արժանավայել կերպով «Ահարոնեան» ակումբը, Մարտ 12, Շաբաթ երեկոյ, ժամը 8.30ին :

Մանրամասնութիւնները յաջորդիւ :

## ՇԱՐԺԱՆԿԱՐԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ Ի ՆՊԱՍՏ ՊՈՄՈՆԻ ԴՊՐՈՑԻՆ ԿԱՐՕՏԵԱԼՆԵՐՈՒ ԵՒ ՀԻՒԱՆԴՆԵՐՈՒ

Նախաձեռնութեամբ Կապոյտ Խաչի մասնաճիւղին, Հինգշաբթի (Մարտ 10), ժամը 20.30ին, Պոմոնի Ֆլորէալ շարժասրահին մէջ:

Կը ներկայացուին Հայաստանի մէջ պատրաստուած Շիրվանզատէի՝

« ՊԱՏՈՒԻ ՀԱՄԱՐ »

Ինչպէս նաեւ գեղարուեստական կարճ ժապաւէններ :

Պիտի ցուցադրուին նաեւ Հայաստանի այլ նշանաւոր ժապաւէններէ հատընտիր մասեր .—

ԱՆՈՒՇ, ՕԹԷԼԼՕ, ԴԱՒԻԹ ԲԷԿ

Տոմսերը նախապէս ապահովել հետեւեալ հասցէներէն . — Պետրոս Վանոյեան, 325 Շըմէն տը Սէն Ժիլիէն, Սերժ Սարգիսեան, 340 Շըմէն տը Սէն Ժիւլիէն, Հացագործեան, 15 Րիւ Լռնկ տէ Քափիւսէն, Տօլպաշեան, 23 Պուլ. տը Պօմոն :

## ՀԱՅԿԱԿԱՆ ԵՐԱԺՇՏՈՒԹԵԱՆ ՓԱՌԱՏՕՆ

**Concerts Chouteau**

Յայտագիր .—

ԱՐԱՄ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ՝

Ջութակի քոնչերթօն եւ Գայանէ :

ԳՈՀԱՐԻԿ ՂԱԶԱՐՈՍԵԱՆ՝ դաշնակի քոնչերթօ (Ա. ունկնդրութիւն) եւ հայկ. ժողովրդական երգեր :

ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻՆ՝

ԳՈՀԱՐԻԿ ՂԱԶԱՐՈՍԵԱՆ (ԴԱՇՆԱԿ)

**GÉRARD JARRY (Violon)**

եւ՝ ՍԻՓԱՆ – ԿՈՄԻՏԱՍ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ ղեկավարութիւն՝

RENÉ-PIERRE CHOUTEAU

Մարտ 7, Երկուշաբթի ժամը 21ին, Սալ Կաւօ :

Տոմսերու գին 2.50էն 10 Ն. Ֆ. :

Դիմել սրահը եւ Տիւրանին :

## ԴՊՐՈՑԱՍԷՐԻՆ ՀԱՄԱՐ

Օգնական խոհարարուհիի մը պէտք կայ: Հեռախօսել 927 – 01 – 72 :



Imprimerie Spéciale du Journal « Haratch »

## ՄԵԾ ԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Համաժողովրդական ապստամբութեան 39րդ տարեդարձին առթիւ

Շաբաթ, 5 Մարտ, ժամը 21էն մինչեւ լոյս Ալհամպրայի մէջ, Հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. կոմիտէի, նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Քրիստափոր ենթակոմիտէի եւ Շ. Միսաքեան խումբի

Կը նախագահէ ընկեր Ա. ՔԷՕՍԷԵԱՆ

Կը խօսի Ընկ. ՀՐԱՆՏ – ՍԱՄՈՒԷԼ

Գեղարուեստական ճոխ եւ ընտիր բաժին

Առաջին անգամ ըլլալով Ֆրանսահայ բեմերու վրայ, սիրայօժար մասնակցութիւնը կը բերէ յատկապէս Վիեննայէն հրաւիրուած երգչուհի Օր. Սեդա Բալուլեան, կ'արտասանեն Օր. Ալիս Շամիրեան, Օր. Սեդա Թութէլեան :

Կը մեներգեն Օր. Ալիս Շամիրեան, Տէրտէրեան եղբարք :

Մարսէյլի Հայ Արենոյշներու կողմէ հայկական եւ գեղջկական պարեր, Ղեկավար Տիկին Մանուշ Շամիրեան, ագորտէոն Ալեքս Ճօշկունեան :

Շամիրամի պար, Օր. Թիրէքեան եւ Ժ. Համբարձումեան, ընկերակցութեամբ Ալեքս Նազաշեանի, Դաշնակահարուհի Օր. Ատրինէ Մանուկեան

Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԱՀԱՐՈՆԵԱՆ ԽՈՒՄԲԻ

**SURPRISE PARTY Ն**

Մարտ 6ին, ժամը 4 – 10, Ազգ. Տան մէջ,

32, RUE DE TRÉVISE, PARIS

## 29ՐԴ ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

### ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԻ

կազմակերպուած շրջանին երէցներուն, սկաուտներուն եւ գայլիկներուն կողմէ:

Կիրակի, Մարտ 6, կէսօրէ վերջ ժամը 2.30ին,

**SALLE DE LA CHIMIE, 28 bis Rue St. Dominique Paris 7e, Métro Invalides**

Ներկայացումներ սկաուտներուն կողմէ, երգեր եւ պարեր, հայկական պարեր, կենդանի պատկերներ եւ խաղեր գայլիկներէն : Ֆրանսերէն կը ներկայացուի՝

« ԹՌՉՈՂ ՀՈՎԱՆՈՑԸ »

կատակերգութիւն, խմբապետուհի ներուն կողմէ :

Մասնաւոր պատրաստութեամբ եւ բեմ ադրութեամբ, Նախկին Հայ Արիները կը ներկայացնեն, հայերէն, Շէյքսփիրի հանրածանօթ կատակերգութիւնը :

ԸՆՏԱՆԵՑԱԾ ՉԱՏՈՒԿԸ

**(La Mégère Apprivoisée)**

Սիրայօժար մասնակցութեամբ եւ օժանդակութեամբ Շաւիլի Երիտասարդաց թատերախումբին :

Պիւֆէ, ցուցադրութիւն — Մուտք 3 Ն. Ֆ. (300) եւ 5 Ն. Ֆ. (500)

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆր. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆր. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 15 Ն. Ֆր. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆր. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆր. | » » » |
| « ԾԱԽՈՒ Է » | 20 Ն. Ֆր. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են:

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է:

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել վարչութեան:

# ՄԵԾ ԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍ
## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

*Շաբաթ, 5 Մարտ, ժամը 21էն մինչեւ լոյս Ալհամպրայի մէջ, Հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. կոմիտէի, նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Քրիստափոր ենթակոմիտէի եւ Շ. Միսաքեան խումբի*

*Կը նախագահէ* ընկեր Ա. ՔԷՕՍԷԵԱՆ
*Կը խօսի Ընկ. ՀՐԱՆՏ – ՍԱՄՈՒԷԼ*

*Գեղարուեստական ճոխ եւ ընտիր բաժին*

*Առաջին անգամ ըլլալով ֆրանսահայ բեմերու վրայ, սիրայօժար մասնակցու – թիւնը կը բերէ յատկապէս Վենետիկէն հրաւիրուած երգչուհի*

## ՕՐ. ՍԵԴԱ ԲԱԼՈՒԼԵԱՆ

*Կ'արտասանեն* Օր. Ալիս Շամիրեան, Օր. Սեդա Թուլթէլեան:
*Կը մեներգեն* Օր. Ալիս Շամիրեան, Տէրտէրեան եղբարք:
*Մարսէյլի Հայ Արենոյշներու կողմէ հայկական եւ գեղջկական պարեր, Ղեկավար* Տիկին Մանուշ Շամիրեան, *ազորտէոն* Ալեքս Ճօշկունեան:
*Շամիրամի պար*, Օր. Թիրէքեան եւ *Ժ.* Համբարձումեան, *ընկերակցութեամբ* Ալեքս Նազաշեանի, *Դաշնակահարուհի* Օր. Էլիզ Գույումճեան, Օր. Ատրինէ Մանուկեան:

---

*Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԱՀԱՐՈՆԵԱՆ ԽՈՒՄԲԻ*

SURPRISE PARTY Ն

Մարտ 6ին, ժամը 4 – 10, Ազգ. Տան մէջ,

32, RUE DE TRÉVISE, PARIS

---

## 29ՐԴ ՏԱՐԵԿԱՆ ՅԵՐԵԿՈՅԹ
## ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԻ

*կազմակերպուած շրջանին երէցներուն, սկաուտներուն եւ գայլիկներուն կողմէ:*
Կիրակի, Մարտ 6, կէսօրէ վերջ ժամը 2·30ին,

**SALLE DE LA CHIMIE, 28 bis Rue St. Dominique**
**Paris 7e, Métro Invalides**

*Պիւֆէ, ցուցադրութիւն* — *Մուտք* 3 Ն. Ֆ. (300) *եւ* 5 Ն. Ֆ. (500)

---

Հիմնադիր–Տնօրէն ԳՐԻԳՈՐ ԹԵՒԱՆԵԱՆ

## ՃԱՇԱՐԱՆ ԵԱՐ

*Ֆրանսական – հայկական եւ կովկասեան ընտիր կերակուրներ*

4, RUE ROBERT-ETIENNE
(Rue Marbeuf) PARIS - 8e
TÉL. : BAL. 31 21
ՇԱՆ ԶԷԼԻԶԷԻ ՍՐՏԻՆ ՎՐԱՅ
Métro : F. D. Roosevelt

Հաճելի մթնոլորտ

*Առաջնակարգ կովկասեան խորոված – ներ, «շաշլիք», «քարսքի»*

**Bar Américain**



---

ՄԻՇՏ ԵՐԻՏԱՍԱՐԴ ՄՆԱԼՈՒ ՀԱՄԱՐ, ՄԻՇՏ ԱՌՈՂՋ ՄՆԱԼՈՒ ՀԱՄԱՐ
ԱՄԷՆ ՏԵՂ ՓՆՏՌԵՑԷՔ

ԵՒՐՈՊԱՅԻ ՄԵԾԱԳՈՅՆ ԱՐՏԱԴՐԻՉ

## Sté le BOSPHORE Ի

### ՀԷԼՎԱՆ ԵՒ ԹԱՀԻՆԸ

ՀՐՈՒՇԱԿԸ, որ կը պատրաստուի շուշմայով (*սուսամ*) եւ շաքարով, առաջնակարգ սնունդ մըն է, կազդուրիչ՝ շնորհիւ շուշմային, որ Արեւելքի մէջ ծանօթ է նաեւ հինէն ի վեր, իր հրաշալի բուժական յատկութիւններով, իր երիտասարդացնող տարրերով.
Արեւելեան ժողովուրդներուն երկարակեցութիւնը արդիւնք է Հէլվայի եւ թահինի գործածութեան:
Այսօր Արեւմուտքի մէջ եւս բժշկական հեղինակութիւններ կը հաստա – տեն առաջնակարգ այս սննդաճիւթին արժէքը:

**Sté le BOSPHORE**
**2, Rue Louis Astoin - Marseille**

---

*Նկատի ունենալ Հայկական երգի փա – ռատօնը, որ տեղի կ'ունենայ Ապրիլ 17–ին, Կիրակի կէսօրէ ետք Փարիզի ՍԻՓԱՆ ԿՈՄԻՏԱՍ երգչախումբի կողմէ, ղեկա – վարութեամբ Կարպիս ԱՓՐԻԿԵԱՆի, Սալ Ռամոյի մէջ (Լիոն):*

---

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ
ՎԱՐԺԱՐԱՆ
ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ
ԿԻՐԱԿԻ, 20 ՄԱՐՏ, ԺԱՄԸ 16

---

## ԾԱԽՈՒ ԽԱՆՈՒԹ

*18րդ Թաղամասին մէջ, ծախու է խա – նութ մը, որ շատ յարմարութիւններ ու – նի կօշկակար – հնակարկատի համար: Պայմաններու համար դիմել՝*

ORNANO : 38-59

---

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*Այրի Տիկին Մարիամ Կանաչեան եւ զաւակները, հոգեհանգստեան պաշտօն կատարել կուտան այս Կիրակի, Փարիզի Հայոց Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյն մէջ, իրենց քրոջ եւ մօրաքրոջ՝ Պուքրէշ մահացած ՕՐԻ ՏԻԿԻՆ ՔՐԻՍԹԻՆԷ ԹՕ – ՔԱԹԼԵԱՆԻ (ծնեալ Կարապետեան) մահ – ուան քառասունքին առթիւ, ինչպէս նաեւ իրենց ամուսնոյն եւ հօր ԹԱԴԷՈՍ ԿԱ – ՆԱՉԵԱՆԻ եւ քեռայրին եւ մօրեղբօր՝ ԿԱՐԱՊԵՏ ԹՕՔԱԹԼԵԱՆԻ հոգւոյն հա – մար: Կը խնդրուի հանգուցեալներուն յի – շատակը յարգողներէն՝ ներկայ գտնուիլ:*

×

*Այս Կիրակի առաւօտ Ալֆորվիլի Ս. Պօղոս –Պետրոս եկեղեցւոյ մէջ հոգե – հանգստեան պաշտօն պիտի կատարուի ողբացեալ՝*

*ՄԻՇԷԼ ՊԱՂՏԱՍԱՐԵԱՆի*

*մահուան քառասունքին առթիւ: Կը հրա – ւիրուին տարաբախտ երիտասարդին յի – շատակը յարգողները:*

×

*Լիոնէն Պ. Վարուժան Սարգիսեան հո – գեհանգստեան պաշտօն մատուցանել կու – տայ, այս կիրակի Լիոնի եկեղեցիին մէջ, Պէյրութ հանգուցեալ իր սիրելի հօրեղ – բօր ՍԻՐԱԿԱՆ ՍԱՐԳԻՍԵԱՆի մահուան քառասունքին առթիւ: Կը հրաւիրուին հանգուցեալին յիշատակը յարգողները:*

---

# Établissements G. HAGOPIAN

## Կ. ՅԱԿՈԲԵԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ

**10, Rue du Caire, PARIS 2e** — **Tél. : CEN. 78-44 et CEN. 66-96**

★

ՇԱՏ ՅԱՐՄԱՐ ԳԻՆԵՐՈՎ — ՄԵԾԱՔԱՆԱԿ ԵՒ ՓՈՔՐԱՔԱՆԱԿ

ԿԸ ԾԱԽԷ ԶԵՏԵՒԵԱԼ ԿԵՐՊԱՍՆԵՐԸ

ԷՆԹԵՐԼՈՔ INTERLOCK — ԺԱՔԱՐ JACQUARD
ՄԱՅ ԱՆԿԼԷԶ MAILLE ANGLAISE — ՄԱՅ ՍԻՒԻՍ MAILLE SUISSE
ՖԻԼ Տ'ԷՔՈՍ FIL D'ÉCOSSE
ԲԱՄԲԱԿԷ ԶԻՒՍՈՒԱՄՔՆԵՐ՝
ՊՈՒՔԼԷԹ BOUCLETTE — ՊԱՆԼՈՆ BANLON

●

ԶԱՆԱԶԱՆ ՏԵՍԱԿՈՎ ԵՒ ԳՈՅՆՈՎ ԹՐԻՔՈՅԻ ՊԱՏՐԱՍՏ ԶԳԵՍՏՆԵՐ
ՎԵՐՋԻՆ ՆՈՐԱՁԵՒՈՒԹԻՒՆՆԵՐՈՎ

★

ԿԸ ԾԱԽԷ ՆԱԵՒ ՁՈՒՏ ԲՈՒՐԴԷ ԴԵՐՁԱՆ 2·28, 2·40, ԵՒ ԽԱՌՆ ԲՈՒՐԴՈՎ 1·26, 1·40

## ՅԱՐՄԱՐ ԳԻՆԵՐ
ԵՒ
## ՎՃԱՐՈՒՄԻ ԼԱՅՆ ԴԻՒՐՈՒԹԻՒՆՆԵՐ

Imprimerie Spéciale du Journal « Haratch »

## ԼՐԱՏՈՒ ԱՐՈՒԵՍՏԻ

« Շուշօ » սէնֆոնիք նուագահանդէս — ներու ընկերակցութիւնը հրաւիրած է Արա Պարթեւեանը, ղեկավարելու համար իր նուագահանդէսներէն մին, 19 Մայիս Հինգշաբթի երեկոյ, Կավոյի սրահին մէջ:

Յայտագրին մէկ մասը պիտի բաղկանայ հեղինակին գործերէն :

---

Տէր եւ Տիկին Յակոբ Թօփալեան եւ զաւակնին Սերժ, ինչպէս նաեւ Վահան — եան (Յունաստան), Հանըմեան, Արիս — եան, Գըլըճեան, Քանարեան, Պօյաճեան, Միքայէլեան, Տէր Յովսէփեան, Տէմիր — ճիպաշեան, Տարօնեան, ընտանիքները ցաւով կը ծանուցանեն իրենց մօր, մեծ մօր եւ ազգականին՝

ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ՆՈՒՐԻՅԱ ԹՕՓԱԼԵԱՆԻ
(Ծնեալ Տէր Յովսէփեան)

մահը որ տեղի ունեցաւ Մարտ 4ին, (82 տարեկանին), իր բնակարանը, 21 Րիւ Քափիթէն Կինըմեռ, Ռոմէնվիլ :

Յուղարկաւորութիւնը տեղի կ'ունենայ այս Երեքշաբթի (8 Մարտ), ժամը 10·30—ին, Փարիզի Հայոց եկեղեցին, 15 Րիւ Ժան Կուժօն, մարմինը պիտի ամփոփուի Լիլայի գերեզմանատունը, իրենց ընտանեկան դամբարանին մէջ:

Մահազդ չստացողներէն կը խնդրուի, ներկայս իբր այդ նկատել :

---

ԱՂՔԱՏԱԽՆԱՄ
Հրաւէր ընդհ. ժողովի եւ կոչ
Թեկնածութեան

Փարիզի Հայ Աղքատախնամ Ընկերակցութեան Ընդհ. ժողովը տեղի պիտի ունենայ երեքշաբթի, 22 Մարտ ժամը 20·30ին, 32 րիւ տը Թրէվիզ :

Կանոնագրի թիւ հինգ յօդուածին համաձայն վարչութեան մէկ երրորդը (հինգ անդամ) նորոգելի ըլլալով, Ընկերակցութիւնը կոչ կ'ընէ իր անդամներէն անոնց որոնք կը փափաքին մասնակցիլ վարչութեան :

Թեկնածութիւնները պարտին Աղքատախնամի գրասենեակը հասնիլ ամէնէն ուշը Մարտ ութին:

Առ այդ, փափաքողները պէտք է ընթեռնլի կերպով գրեն, տալով իրենց անունը, մականունը եւ հասցէն :

Թեկնածու կրնան ըլլալ միայն այն անդամները որոնք իրենց անդամավճարները կանոնաւորապէս վճարած են երեք տարիէ ի վեր :

---

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԴՊՐՈՑԱՍԷՐԻ
Գեղարուեստական ցերեկոյթը
ԱՊՐԻԼ 3ԻՆ

×

Նախկին Սամաթիացիներու տարեկան պարահանդէսը տեղի պիտի ունենայ Ապրիլ 10ին, Կիրակի, Ամպասատէօրի շքեղ սրահներուն մէջ: Մանրամասնութիւնները յաջորդով :

Imprimerie Spéciale du Journal « Haratch »

## ՀԱՅԿԱԿԱՆ ԵՐԱԺՇՏՈՒԹԵԱՆ ՓԱՌԱՏՕՆ
### Concerts Chouteau

Յայտագիր.—

ԱՐԱՄ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ՝
Ջութակի քոնչերթօն եւ Գայանէ :

ԳՈՀԱՐԻԿ ՂԱԶԱՐՈՍԵԱՆ՝ դաշնակի քոնչերթօ (Ա. ունկնդրութիւն) եւ հայկ. ժողովրդական երգեր :

ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻՆ՝

ԳՈՀԱՐԻԿ ՂԱԶԱՐՈՍԵԱՆ (ԴԱՇՆԱԿ)
GÉRARD JARRY (Violon)
եւ՝ ՍԻՓԱՆ - ԿՈՄԻՏԱՍ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ
ղեկավարութիւն՝

RENÉ-PIERRE CHOUTEAU

Մարտ 7, Երկուշաբթի ժամը 21ին, Սալ Կավօ:

Տոմսերու գին 2·50էն 10 Ն. Ֆ.:

Դիմել սրահը եւ Տիւրանին :

---

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ
ՎԱՐԺԱՐԱՆ
ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ
ԿԻՐԱԿԻ, 20 ՄԱՐՏ, ԺԱՄԸ 16

---

ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Հայաստանէն, Կիրովական գիւղէն Օր. Արաքսի Շիւքիւրեան կը փնտռէ իր եղբայրը, Յակոբ Շիւքիւրեանը, որ երկրորդ ընդհանուր պատերազմին ճակատը կորսուած է: Կը կարծուի որ Լիոնի կամ հրջաններու մէջ գտնուի: Որոշ նշան իր վրայ, գլխուն ձախ կողմը սպի մը ունի: Հօրը անունը Մանուկ է, իսկ մօրը անունը Հեղինէ: Լուր ունեցողներէն կը խնդրուի Լիոնի եկեղեցւոյ գրասենեակը տեղեկացնել :

---

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

« ՎԱՐԴԱՆԱՆՑ »Ը

Կը ներկայացուի Առնուվիլի Հ. Յ. Դ. Նոր Սերունդին կողմէ :

Ապրիլ 3ին

×

ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ Անկէնի մասնաճիւղին տարեկան հանդէսը՝

ՄԱՅԻՍ 8ԻՆ (Անկէն)





## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած Շաւիլի Կրօնական Ընկերակցութեան կողմէ

Ի նպաստ Եկեղեցւոյ եւ դպրոցին

ՏԵՂԻՈՅՆ ՔԱՂԱՔԱՊԵՏԱԿԱՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ
Կիրակի Մարտ 13, ժամը 15ին

Երգ, արտասանութիւն եւ պար դպրոցի աշակերտներուն կողմէ

Դաշնակի ընկերակցութեամբ Օր. ԱԼԻՍ ՄԵԾԱՏՈՒՐԵԱՆԻ

Ժողովուրդի խնդրանքին վրայ երկրորդ անգամ կը ներկայացուի Շէյքսփիրի ԸՆՏԱՆԵՑԱԾ ՄԵԳԵՐԱՆ

Բեմադրութիւն՝ ՓԱՆՈՍԻԿ ՓԱՆՈՍԵԱՆԻ

Ժամը 8էն վերջ եւրոպական պարեր

ՊԻՒՖԷ — ՄՈՒՏՔ 3 Ն. ՖՐԱՆՔ

բութիւններուն: Ցամենայն դէպս, դէչ թուական մը պիտի ըլլայ Ֆրանսայի համար, որովհետեւ կասկած մը առաջ ե – կաւ, ինչպէս հոս, այնպէս եւ մահմետա – կաններուն եւ աշխարհի մէջ: Ինչ որ ըլ – լայ վաղուան մեր ընելիքը, նորէն իր ճառին տուն տուող կարգ մը մտքերը մեզ նեղ կացութեան մը կը մատնեն: Հասած ենք տեղ մը ուր Ֆրանսական ժո – ղովրդավարական սկզբունքները մեծ չա – փով տուժեցին »:

Խօսքի շարունակութեանը մէջ կի Մոլէ ըսած է նաեւ. — «Ճիշդ չէ թէ այս մարդը (զօրավարը) երկերես է եւ սուտ կը խօսի, ճիշդ չէ, որովհետեւ բոլորովին հակառակ է իր նկարագրին: Ճիշդ է, ընդունակ է ան կոպտութեան, խորա – մանկութեան, սակայն ոչ ստախօսու – թեան, ատոր համար է որ չեմ հաւատար լուրին ճշգրտութեան:

Իր կարգին, Մօրիս Շուման յայտարա – րած է. — «Պարկեշտ գործ մը պիտի ըլլար տեսակէտներ արտայայտել հիմ – նուելով բացառաբար ճառի մը կցկտուր մասերուն վրայ »:

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ. — Հ. Յ. Դ. Աղբիւր Սերոբ – Եօթնեղբայրեան խումբի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 20.30–ին, սովորական ժողովատեղին: Ընկեր – ներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Կարեւոր օրակարգ:

### ՆՈՒԷՐՆԵՐ

Գրիգոր Փարատեանի եւ Թագուհի Աբ – րահամեանի ամուսնութեան առթիւ (28 – 2 – 1960) կնքահայրը՝ Յակոբ Հաճի Դա – նիէլեան (Սթանոզցի) քսան Ն. Ֆ. կը նը – ւիրէ Խրիմեան դպրոցին եւ տասը Ն. Ֆ. «Յառաջ»ին: Գր. Փարատեան՝ քսան Ն. Ֆ. Խրիմեան դպրոցին: (Ստանալ Սթա – նոզցի Օտայէն):

### ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս Չո – րեքշաբթի գիշեր, ժամը 21ին, Քաւէի սրահը: Կը խօսի բժշկական ուսանող Պ. Լեւոն Մոմճեան: Նիւթ՝ «Սփիւռքի մէջ ինչո՞ւ մեր երիտասարդութիւնը կը խու – սափի հայ հանրային աշխատանքներէն. ատոր հետեւանքները»: Ճշդապահ ըլլալ:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոնի Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւ – նը շնորհակալութեամբ ստացաւ հետեւ – եալ գումարները ի նպաստ Լիոնի եկե – ղեցւոյ շինութեան. — Հանգուցեալ Ժան Աղաճանեանի մահուան առթիւ, փոխան ծաղկեպսակի Տիկին Արշալոյս Ինէքճեա – նէ քսան Ն. Ֆ., Հանգուցեալ Տիկին Հայկանոյշ Բարսեղեանի մահուան քա – ռասունքին առթիւ Տիկին Նազելի Զալըգ – եանէ քսան Ն. Ֆ., Տիկիններ Գապագ – եանէ, Ճիլաճեանէ, Զիվիճեանէ, Գա – լուստեանէ տասնական Ն. Ֆ.:

Imprimerie Spéciale du Journal « Haratch »

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԴՊՐՈՑԱՍԷՐԻ
Գեղարուեստական ցերեկոյթը
ԱՊՐԻԼ 3ԻՆ

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոնի Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւ – նը շնորհակալութեամբ ստացաւ Տէր եւ Տիկին Մագսուտ Մանիկեանէ 50 Ն. Ֆ.ի նուիրատուութիւը, փոխան ծաղկեպսա – կի, Կրընոպլէն հանգուցեալ Երուանդ Հա – ճըեանի մահուան առթիւ:

Փարիզէն ծանօթ գործավաճառ Պ. Գէ – որգ Պագըրճեան, այս անգամ եւս Լիոնի եկեղեցւոյ շինութիւնը քաջալերած է 2000 Ն. Ֆ.ի ինքնաբուխ եւ առատաձեռն նը – ւիրատուութեամբ, որուն համար խորա – պէս իր շնորհակալիքը կը յայտնէ Եկե – ղեցաշէն յանձնախումբը:

Պ. Գէորգ Պագըրճեան Լիոնի Եկեղեց – ւոյ շինութեան տեւական բարերարն է: Քանի քանի անգամներ մեծաքանակ գու – մարներ նուիրած է եւ միշտ ուզած է մը – նալ անծանօթ բարերար: Այս անգամ հակառակ իր կամքին, շնորհակալու – թեամբ եւ երախտագիտութեամբ կ'ար – ձանագրենք իր նուիրատուութիւնը, տեղ – եակ պահելու համար Լիոնահայութիւնը, որ հեռու բնակող հայրենակիցներ, որը – տանց մօտ են Լիոնի եկեղեցւոյ շինու – թեան, փափաքելով օր առաջ զայն ա – ւարտած տեսնել ու ատոր համար կամո – վին կը բերեն միշտ իրենց բարոյական եւ նիւթական աջակցութիւնը:

ԴԻՒԱՆ





ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Նախկին Սամաթիացիներու տարեկան պարահանդէսը տեղի պիտի ունենայ Ապրիլ 10ին, կիրակի, Ամպասատէօրի շէնք սրահներուն մէջ: Մանրամասնութիւն – ները յաջորդով:

պայքարելու ֆրանսական պետութեան միջոցները, ինչ որ մեծապէս պիտի դիւրացնէր Մոսկուայի հաշուին աշխատող անջատական մարդոց աշխատանքները »:

Զանազան մարմիններու եւ հաստատութիւններու կողմէ բողոքագիրներ ուղղուած են ներքին գործոց նախարարութեան :

---

ՀՆԴԿԱԿԱՆ կառավարութեան բանբերը յայտարարեց թէ Կարմիր Չինաստանը իր հիւլէական ռումբը պիտի պայթեցնէ Մարտ 28ին: Թուականը որոշուած է որ Շու էն Լայ աւելի զօրաւոր դիրք ունենայ Ապրիլին երբ գայ Նեհրուին հետ տեսնուելու :

ՄԻԱՑ. ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ արտաքին նախարար Հերթըր, Քուպայի դեսպանին յայտարարած է թէ «Ֆիտէլ Քասթրօ անպատասխանատու արտայայտութիւններ եւ սխալ ամբաստանութիւններ կ'ընէ» : Ամերիկացի քաղաքական դէմքը կ'անդրադառնայ ֆրանսական «Լա Քուպ» փոխադրանաւի խորհրդաւոր պայթումին : Քուպա կ'ամբաստանէ Մ. Նահանգները :

## ՆՈՒԷՐ

Տիկին Սիրանոյշ Զաքրեան իր ողբացեալ ամուսնոյն յիշատակին տասը Ն. Ֆ. կը նուիրէ «Յառաջ»ի բարգաւաճման :

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ
### ՄԻՋԻՆՔԻ ԱՌԹԻՒ

Կազմակերպուած Փարիզահայ Տիկնանց Միութեան Որբերու Օգնութեան Մարմնին կողմէ :

ՀԻՆԳՇԱԲԹԻ ՄԱՐՏ 24ԻՆ, ԺԱՄԸ 15ԻՆ

Փափաքողները կրնան ծպտել իրենց երախաները Լա Ֆոնթէնի առակները խորհրդանշող զգեստներով կամ միայն գլուխով եւ արտասանել տալ անոնց իրենց ծպտումին համապատասխան առակը :

Որբերու Օգն. Մարմինը քաջալերուած նախորդ տարիներու իր գտած յաջողութենէն կը յուսայ որ այս անգամ եւս հանրութիւնը պիտի քաջալերէ զինքը, օգտակար հանդիսանալով Միութեան բարենպատակ ձեռնարկներուն :

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս Չորեքշաբթի գիշեր, ժամը 21ին, Քաղէի սրահը: Կը խօսի բժշկական ուսանող Պ. Լեւոն Մոմճեան: Նիւթ՝ «Սփիւռքի մէջ ինչո՞ւ մեր երիտասարդութիւնը կը խուսափի հայ հանրային աշխատանքներէն. ատոր հետեւանքները»: Ճշդապահ ըլլալ:

## —ՑՈՒՇԱՏԵՏՐ—

ՀԱՄԱԽՄԲ. Հայր. Միութեան Մարսէյլի մասնաճիւղի վարչութիւնը սիրով կը հրաւիրէ իր ընդհ. անդամական ժողովին, այս Կիրակի առաւօտեան ժամը 9 – 11, սովորական սրահը, Պառ տիւ Կլոպ :

Ծանօթ.— Ներկաներու թիւը մեծամասնութիւն պիտի նկատուի: Օրակարգ տեղւոյն վրայ : –



ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ
ԴՊՐՈՑԱՍԷՐԻ
Գեղարուեստական ցերեկոյթը
ԱՊՐԻԼ 3ԻՆ

## ԱՊՐԻԼ 11-24 Ը
### ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Կ'ողեկոչուի Ապրիլ 24ին :

Նախաձեռնութեամբ Ապրիլեան Սեբուհի, Սալ Քաղէի մէջ :

## ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ
### ՎԻԷՆԻ ՄԷՋ

Կազմակերպուած Նոր Սերունդի Մուրատ խումբին կողմէ, այս շաբաթ իրիկուն ժամը 21ին, տեղւոյն Սալ տէ Ֆէթի մէջ :

Կը հրաւիրուին քոյր խումբերու ընկերներն ու ընկերուհիները եւ համակիրները :

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Աղբիւր Սերոբ-Եօթնեղբայրեան խումբի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 20.30-ին, սովորական ժողովատեղին : Ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է : Կարեւոր օրակարգ :

### ՇԱՐԺԱՆԿԱՐԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ Ի ՆՊԱՍՏ ՊՈՄՈՆԻ ԴՊՐՈՑԻՆ ԿԱՐՕՏԵԱԼՆԵՐՈՒ ԵՒ ՀԻՒԱՆԴՆԵՐՈՒ

Նախաձեռնութեամբ Կապոյտ Խաչի մասնաճիւղին, Հինգշաբթի (Մարտ 10), ժամը 20.30ին, Պոմոնի Ֆլորէալ շարժասրահին մէջ:

Կը ներկայացուին Հայաստանի մէջ պատրաստուած Շիրվանզադէի՝
« ՊԱՏՈՒԻ ՀԱՄԱՐ »

Ինչպէս նաեւ գեղարուեստական կարճ ժապաւէններ :

Պիտի ցուցադրուին նաեւ Հայաստանի այլ նշանաւոր ժապաւէններէ հատընտիր մասեր .—

ԱՆՈՒՇ, ՕԹԷԼԼՕ, ԴԱՒԻԹ ԲԷԿ

Տոմսերը նախապէս ապահովել հետեւեալ հասցէներէն .— Պետրոս Վանոյեան, 325 Շըմէն տը Սէն ժիւլիէն, Սերժ Սարգիսեան, 340 Շըմէն տը Սէն ժիւլիէն, Հացագործեան, 15 Րիւ Լոնկ տէ Քափիւսէն, Տօլպաշեան, 23 Պուլ. տը Պօմոն :



Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՀԱՅԱԳԻՏԱԿԱՆ ԼՍԱՐԱՆԱԿԱՆ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ՇԱՐՔ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. « Նոր Սերունդ»ի կեդր. վարչութեան կողմէ

Դասախօսներ
Հ. ՍԱՄՈՒԷԼ, Կ. ՄԵՀԵԱՆ, Ա. ԻՍԱՀԱԿԵԱՆ եւ ուրիշներ
Այս դասախօսութիւնները վերապահուած են Հ. Յ. Դ. Նոր Սերնդականներուն:
Արձանագրութիւնը պարտաւորիչ է :

Բ. Դասախօսութիւն
Նիւթ՝ Ինչո՞ւ եւ ի՞նչպէս հիմնուեցաւ Հ. Յ. Դաշնակցութիւնը : 16
Դասախօս՝ ընկ. Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ

Տեղի կ'ունենայ այս Ուրբաթ ժամը 20.30ին, Մշակոյթի Տան մէջ, 17 Րիւ Պլէօ :

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած Շաւիլի Կրօնական Ընկերակցութեան կողմէ

Ի նպաստ Եկեղեցւոյ եւ դպրոցին

ՏԵՂԻՈՅՆ ՔԱՂԱՔԱՊԵՏԱԿԱՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ
Կիրակի Մարտ 13, ժամը 15ին

Երգ, արտասանութիւն եւ պար դպրոցի աշակերտներուն կողմէ

Դաշնակի ընկերակցութեամբ Օր. ԱԼԻՍ ՄԵԾԱՏՈՒՐԵԱՆԻ

Ժողովուրդի խնդրանքին վրայ երկրորդ անգամ կը ներկայացուի
Շէյքսփիրի ԸՆՏԱՆԵՑԱԾ ՄԵԳԵՐԱՆ
Բեմադրութիւն՝ ՓԱՆՈՍԻԿ ՓԱՆՈՍԵԱՆԻ
ժամը 8էն վերջ եւրոպական պարեր

ՊԻՒՖԷ ՄՈՒՏՔ 3 Ն. ՖՐԱՆՔ

## ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

կազմակերպուած

ՀԱՃՆՈՅ ՓԱՐԻԶԻ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ
Կիրակի, Մարտ 13, ժամը 16էն մինչեւ 24

**Salons des Ambassadeurs**

3, Ավընիւ Կապրիէլ,

Գեղարուեստական ճոխ բաժին եւ զանազան անակնկալներ
Նուագախումբ՝ ՎԱՐԴԻՎԱՆԵԱՆ

Տոմսերու եւ սեղաններու համար դիմել՝ Յ. Պահատէրեանի, Հեռ. Օնեանօ 37-22 եւ Գ. Աղամեանի՝ հեռ. Թռինիթէ 58–74 Մուտք՝ 5 Ն.Ֆ., ուսանողներու կէս գին

## ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ
### ՎԻՇՆԻ ՄԷՋ

Կազմակերպուած Նոր Սերունդի Մուրատ խումբին կողմէ, այս շաբաթ իրիկուն ժամը 21ին, տեղւոյն Սալ տէ Ֆէթի մէջ:

Կը հրաւիրուին քոյր խումբերու ընկերներն ու ընկերուհիները եւ համակիրները:

## —ՑՈՒՇԱՏԵՏՐ—

ԼԻՈՆ.— Ց. Կ. Խաչի Լիոնի մասնաճիւղը, ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերուհիները Չորեքշաբթի, 16 Մարտ, ժամը 15ին, Ցոյներու սրահը: Կարեւոր օրակարգ՝ պարահանդէս:

ՀԱՄԱԽԱՐԲ. Հայր. Միութեան Մարսէյլի մասնաճիւղի վարչութիւնը սիրով կը հրաւիրէ իր ընդհ. անդամական ժողովին, այս Կիրակի առաւօտեան ժամը 9 – 11, սովորական սրահը, Պառ տիւ Կլոպ:

Ծանօթ.— Ներկաներու թիւը մեծամասնութիւն պիտի նկատուի: Օրակարգ տեղւոյն վրայ:

## ՓԵՏՐՈՒԱՐ 18Ը
### ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Փետրուար 18ի համաժողովրդական ապստամբութեան 39րդ տարեդարձը կը տօնուի արժանավայել կերպով «Ահարոնեան» ակումբը, Մարտ 12, Շաբաթ երեկոյ, ժամը 8·30ին:

Հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Վալանսի «Քրիստափոր» Շրջ. կոմիտէին կողմէ եւ մասնակցութեամբ Նոր Սերունդի «Շաւարշ Միսաքեան» խումբի:

Եւրոպական, հայկական պար եւ առատ կերուխում:

Մուտքը ազատ է:

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Աղբիւր Սերոբ-Եօթնեղբայրեան խումբի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 20·30-ին, սովորական ժողովատեղին: Ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Կարեւոր օրակարգ:



Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ
### Les peuples qui chantent

Ժողովրդական երգի եւ պարի փառատօն, ի նպաստ Ֆրանսայի Ուսանողական Սանաթօրիօմներուն:

Կիրակի, 13 Մարտ, ժամը 14·30ին
Սորպոնի Մեծ Ամփիթատրոնին մէջ
Գիները՝ 400 (4 Ն. Ֆ.), 300 (3 Ն. Ֆ.), 200 (2 Ն. Ֆ.), 150 (1·50 Ն.Ֆ.):
Դիմել Սորպոնի դրամարկղներուն:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տէր եւ Տիկին Արամ Մարտիրոսեան կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցիին մէջ, յետ պատարագի ողբացեալ՝ ԱՐՇԱԿ ՄՈՒՇԵՂԵԱՆԻ մահուան տարելիցին առթիւ (մեռած՝ Պրիւսէլ):

Կը հրաւիրուին յիշատակը յարգողները:

×

Պ. Արամ Զաքրեան, Տէր եւ Տիկին Պարոյր Մինասեան, Այրի Տիկին Էլմասեան, Տէր եւ Տիկին Ժիրայր Էլմասեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Մուրատեան եւ զաւակները, կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, առաւօտեան ժամը տասնին, իրենց կնոջ, մօր, զաւկին, քրոջ, ու ազգականին Տիկին Աստղիկ Զաքրեանի (ծնեալ Էլմասեան) մահուան քառասունքին առթիւ:

Իր յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ:

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ
### ՄԻՋԻՆՔԻ ԱՌԹԻՒ

Կազմակերպուած Փարիզահայ Տիկնանց Միութեան Որբերու Օգնութեան Մարմնին կողմէ:

ՀԻՆԳՇԱԲ. ՄԱՐՏ 24ԻՆ, ԺԱՄԸ 16·30ԻՆ
Փավիյօն Տոֆինի մէջ

Փափաքողները կրնան ծպտել իրենց երախաները Լա Ֆոնթէնի առակները խորհրդանշող զգեստներով կամ միայն գլխով եւ արտասանել տալ անոնց իրենց ծպտումին համապատասխան առակը:

Որբերու Օգն. Մարմինը քաջալերուած նախորդ տարիներու իր գտած յաջողութենէն կը յուսայ որ այս անգամ եւս հանրութիւնը պիտի քաջալերէ զինքը, օգտակար հանդիսանալով Միութեան բարենպատակ ձեռնարկներուն:

ԱՍՏՂԻԿԻ ուղղութեամբ, զօրաւոր հաղորդիչով մը օժտուած, արուեստական արբանեակ մը արձակեցին՝ Ամերիկացիք: Արուեստական արբանեակը զետեղուած էր 27 մեթր երկայնք ունեցող եռայարկ «Թօռ» հրթիռի մը վրայ: Աստղիկին շրջանը ընելէ ետք պիտի հակի Արեգակին: Մինչեւ երէկ՝ 650.000 քմ. տարածութիւն կտրած էր: Գիտական կարեւոր յայտնութիւններու սեմին կը գտնուինք:

ԽՈՐՀՐԴԱՒՈՐ պայմաններու մէջ պայթած ֆրանսական «Լա Քուրպ» փոխադրանաւին զոհ գացած վեց նաւաստիներուն ընտանիքները տասը հազարական տոլար վնասուց հատուցում պիտի ստանան:

ՅՈՐԴԱՆԱՆԻ թագաւորը, Հուսէյին խիստ բառերով քննադատած է Արաբ Միացեալ Հանրապետութեան քաղաքանութիւնը Պաղեստինի վերաբերմամբ: «Պատեհապաշտ» անուանած է այդ քաղաքականութիւնը:

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն կը ծանուցանէ մահը, Վէթ. ընկերուհի

ՆԱՐԿԻԶ ՔԻՊՐԻԹՃԵԱՆԻ

Սոյն դառնաղէտ կորուստին առթիւ Շրջ. կոմիտէն ցաւակցութիւններ կը յայտնէ ողբացեալին ընտանեկան բոլոր պարագաներուն:

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Ֆ. Կ. ԽԱՉԻ Կեդր. վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է, Պ. Գ. Լօրէնեանէ (ըՏակինեան) իր թոռնիկներուն, Վարուժանի եւ Արուսեակի ծննդեան 9րդ տարեդարձին առթիւ յիսուն Ն. Ֆ., Տիկ. Եագուպեանէ (Քլամառ) տասը Ն. Ֆ.:

ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս Զորեքշաբթի գիշեր, ժամը 21ին, Քատէի սրահը: Կը խօսի Պ. Վ. Մելիքեան: Նիւթ՝ «Քիւրտերը իրենց անցեալով ու ներկայով»: Կը հրաւիրուին լսարանականները ու ընթերցասէրները:



ԺՈՂՈՎ - ԹԷՅԱՍԵՂԱՆ

Կապոյտ Խաչի Կրընոպլի մասնաճիւղին թէյասեղան – ընդհանուր ժողովը, Կիրակի, 20 Մարտ, ժամը 15ին, դպրոցին մէջ:

Կարեւոր օրակարգ:

Կը խնդրուի ընկերուհիներէն ճշդապահ ըլլալ: Ժամը 18ին կը սկսի թէյասեղանը, որուն սիրով կը հրաւիրուին նաեւ Խաչուհիներու ամուսինները, հաճելի օր մը անցընելու համար:

Ֆ. ԿԱՊ. ԽԱՉԻ ԿԱՅԱՆ

Պզտիկներու արձանագրութիւնները պիտի սկսին Ապրիլ մէկին եւ պիտի փակուին Մայիսի վերջը:

Կեդրոնի արձանագրութեան օրերն են Զորեքշաբթի եւ Ուրբաթ ժամը 13 – 14 եւ 18 – 20: Անկէ դուրս ժամադրութեամբ, հեռախօս Թիւիտէն 27 – 35:

Փարիզէն դուրս դիմել տեղական մասնաճիւղերուն:

ՄԵՂՈՒԻՆ ՃԱՌԸ
Գրեց՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

Ստանալու համար դիմել՝
Մարսէյլ.— Ա. Քէօսէեան (Փլաս տ'Էքս): Ուր կարելի է բաժանորդագրուիլ նաեւ «Հայ – Բոյժ»ի:
Նիս.— Շահան Զօտեան
Վալանս.— Արսէն Տէր – Սարգիսեան:
Կրընոպլ.— Վ. Բաբախեան:
Տէսին.— Սարգիս Առաքելեան:
Լիոն.— Մ. Կէնճեան եւ Ղ. Ղազարեան:
Վիէն.— Մուշեղ Մուրատեան:
Պոռտօ.— Կ. Տօնէրեան:
Սէն Շամոն.— Մ. Ընտրիկեան:

ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Մուշ քաղաքից վերին Թաղէն Պըսիկեան տունից Ռայչօեան երեք եղբայրներ, Խլղաթ, Բենիամին եւ Արտաշ, որոնք այս վերջին պատերազմին ընթացքին կորսուած են: Լուր ունեցողներէն կը խնդրուի տեղեկացնել հետեւեալ հասցէին, եւ կը խնդրուի արտատպել արտասահմանի թերթերէն:

KH. DERDERIAN
RUE SERPAIZE, MONTÉE DE RAMES
VIENNE - ISÈRE



ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

SURPRISE PARTY

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Պաննէօ Քաչանի խումբին կողմէ:
Կիրակի, Մարտ 20, ժամը 16էն 24:

167. RUE MONTMARTRE ի շքեղ սրահներուն մէջ: MÉTRO RUE MONMARTRE

Գեղարուեստական խնամուած բաժին

**Attractions**

Ճոխ պիւֆէ — Անակնկալներ

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ
ՎԱՐԺԱՐԱՆ
ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ
ԿԻՐԱԿԻ, 20 ՄԱՐՏ, ԺԱՄԸ 16



Imprimerie Spéciale du journal « Haratch »

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԴՊՐՈՑԱՍԷՐԻ
Գեղարուեստական ցերեկոյթը
ԱՊՐԻԼ 3ԻՆ

ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ
ՄԻՋԻՆՔԻ ԱՌԹԻՒ

Կազմակերպուած Փարիզահայ Տիկնանց Միութեան Որբերու Օգնութեան Մարմնին կողմէ:

ՀԻՆԳՇԱԲ. ՄԱՐՏ 24ԻՆ, ԺԱՄԸ 16.30ԻՆ
Փավիյօն Տօֆինի մէջ

Փափաքողները կրնան ծպտել իրենց երախաները Լա Ֆոնթէնի առակները խորհրդանշող զգեստներով կամ միայն գլուխով եւ արտասանել տալ անոնց իրենց ծպտումին համապատասխան առակը:

Որբերու Օգն. Մարմինը քաջալերուած նախորդ տարիներու իր գտած յաջողութենէն կը յուսայ որ այս անգամ եւս հանրութիւնը պիտի քաջալերէ զինքը, օգտակար հանդիսանալով Միութեան բարենպատակ ձեռնարկներուն:

—ՅՈՒՇԱՏԵՏՐ—

ԼԻՈՆ.— Ֆ. Կ. Խաչի Լիոնի մասնաճիւղը, ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերուհիները Զորեքշաբթի, 16 Մարտ, ժամը 15ին, Ցոյներու սրահը: Կարեւոր օրակարգ՝ պարահանդէս:

ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ
ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆր. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆր. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 15 Ն. Ֆր. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆր. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆր. | » » » |
| «ԾԱԽՈՒ Է» | 20 Ն. Ֆր. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են:

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է:

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԿԻ ՄՈԼԷ տեմոքրասի 60ի մէջ, կը գրէ վերջին դէպքերու առթիւ. — Պէտք է յայտնենք մեր մտահոգութիւնը եւ մեր ընդդիմութիւնը ի դէմ որոշ յեղաշրջման մը: Սահմանադրութիւնը չի գործադրը – ուիր: Յառաջդիմութիւնը դէպի նախա – գահական վարչաձեւը կը շեշտուի: Ատ – լանտեան աշխարհի բաժանումը կը ծան – րանայ եւ այն համաձայնութիւնը զոր տուած եմ հանրապետութեան նախագահին աւելի եւս զիջացնել կուտայ ինծի զոր – ծելակերպերու մասին տարակարծու – թիւնները: Կը վախնամ նաեւ որ դէպի միացեալ Եւրոպա յառաջացումը, որուն այնքան կապուած եմ, դանդաղանայ՝ եւ նոյնիսկ կենայ: Ելմտական, ընկերային տնտեսական քաղաքականութիւնը մեծ եւ արդար դժգոհութիւն յառաջ բերին: Ա– ւելի ծանր է այն յուսախաբութիւնը որ ստեղծուեցաւ Զօրավարին Ալժերիա այ – ցելութեան առթիւ: Կարելի չէ, ինչ կ'ըսեմ, իրաւ չէ որովհետեւ քանի ան – գամներ հակառակը ըսած եւ գրած է որ տը Կոլ հաւատայ զինուորական յաղթա – նակի մը: Բայց կասկածը կը մնայ: Պէտք է որ սահմանադրութիւնը գործադրուի, եկեղեցւոյ եւ պետութեան բաժանումը դարձեալ օրէնք դառնայ, Ալժերիոյ հա – մար, կրակը դադրեցնելու հրաւէրը միշտ ի զօրու մնայ, նորոգուի, ճշդուի: Ամէն բան կարելի է տակաւին բայց այլեւս պէտք չէ թոյլ տալ ոչ մէկ սխալ»:

ՆԱԽԿԻՆ ՎԱՐՉԱՊԵՏ ՍԷՆԵԼԻ յանձ – նուած է Իտալիոյ նոր կառավարութեան կազմութիւնը, որ կը փորձէ քիչ մը ձախ բնոյթ ունեցող դահլիճ մը կազմել:

ՄԱՌԵՇԱԼ ՊՈԿՏԱՆՈՎ մեռած է: Յա– րական եւ խորհրդային բանակներու մաս կազմած էր եւ համաշխարհային Բ. պա– տերազմին մասնակցած էր Պերլինի պա – շարման, 64 տարեկան էր:

### ՆՈՒԷՐ

Տէր եւ Տիկին Փիլիպպոս Օհաննէսեան քսան Ն. Ֆ. կը նուիրեն Շաւիլի դպրոցին, փոխան ծաղկեպսակի ողբացեալ Տիկին Սրբուհի Սուրեանի մահուան առթիւ:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Առնուվիլի Վ. Ս. Խաչ եկեղեցւոյ հո – գաբարձութիւնը շնորհակալութեամբ ըս– տացած է վեց աթոռ եկեղեցւոյս համար Սեւռանարնակ Տէր եւ Տիկին Քէպապ – ճեանէն իրենց զաւկին Արթիւրի ողջ ա – ռողջ Ալժերիայէն վերադարձին առթիւ:

## ՄԵՂՈՒԻՆ ՃԱՌԸ

Գրեց՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

Ստանալու համար դիմել՝

Մարսէյլ.— Ա. Քէօսէեան (Փլաս տ'Էքս): Ուր կարելի է բաժանորդագ – րուիլ նաեւ «Հայ – Բոյժ»ի:

Նիս.— Շահան Զօտեան

Վալանս.— Արսէն Տէր – Սարգիսեան:

Կրընոպլ. — Վ. Բաբախեան:

Տէսին.— Սարգիս Առաքելեան:

Լիոն.— Ս. Կէնճեան եւ Ղ. Ղազարեան:

Վիէն.— Մուշեղ Մուրատեան:

Պոռտօ.— Կ. Տօնէրեան:

Սէն Շամոն.— Ս. Ընտրիկեան:

**ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ**

ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ Անկէնի մասնաճիւղին տարեկան հանդէսը՝

ՄԱՅԻՍ 8ԻՆ (Անկէն)

×

ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ ՕՐԸ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

Կիրակի, 8 Մայիս 1960, Սորպոնի Մեծ Ամփիթատրոնին մէջ:

### Կ'ՓՆՏՌՈՒԻ

Երիտասարդ կին մը կամ օրիորդ մը, կարէ հասկցող իբրեւ վանտէօզ – մանիւ– թանխոնիսթ:

ԴԻՄԵԼ՝

CONFECTION DE PARIS

19, BLD. ST. DENIS. PARIS 3'

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Լօզանէն Սաթենիկ Օհաննէսեան (Թիֆ– լիսցի) կը փնտռէ իր հայրը՝ Սարգիս Օհաննէսեան Ակոբօֆ, (դերձակ), որ 1930ին Փարիզ էր (Պէքոն լէ Պրիւյէռ), Սաթենիկի կնքահայրը եղած է Տոքթ. Ամատեան: Դիմել Յառաջի վարչութեան:

## ԱՊՐԻԼ 11-24 Ը ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Կ'ողեկոչուի Ապրիլ 24ին:

Նախաձեռնութեամբ Ապրիլեան Սե – րունդի, Սալ Բատէի մէջ:

## ԺՈՂՈՎ - ԹԷՅԱՍԵՂԱՆ

Կապոյտ Խաչի Կրընոպլի մասնաճիւղին թէյասեղան – ընդհանուր ժողովը, Կիրա– կի, 20 Մարտ, ժամը 15ին, դպրոցին մէջ:

Կարեւոր օրակարգ:

Կը խնդրուի ընկերուհիներէն ճշդապահ ըլլալ: Ժամը 18ին կը սկսի թէյասեղա– նը, որուն սիրով կը հրաւիրուին նաեւ Խաչուհիներու ամուսինները, հաճելի օր մը անցընելու համար:

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի ա – շակերտուհիներու կողմէ:

Ապրիլ 3ին, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 15ին, Մէզոն տը լա Շըմիի մէջ, 28պիս, Րիւ Սէն Տօմինիք, մէթրօ էնվալիտ:

ԵՐԳ, ՊԱՐ, ԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ:

Պիտի ներկայացուին նաեւ հայերէն եւ ֆրանսերէն թատերախաղեր:

Մուտք՝ 6, 5 եւ 3 Ն. Ֆ.:

### Ֆ. ԿԱՊ. ԽԱՉԻ ԿԱՅԱՆ

Պզտիկներու արձանագրութիւնները պիտի սկսին Ապրիլ մէկին եւ պիտի փակ– ուին Մայիսի վերջը:

Կեդրոնի արձանագրութեան օրերն են Չորեքշաբթի եւ Ուրբաթ ժամը 13 – 14 եւ 18 – 20: Անկէ դուրս ժամադրութեամբ, հեռախօս ԹՌԻԻտէն 27 – 35:

Փարիզէն դուրս դիմել տեղական մաս– նաճիւղերուն:

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ ՄԻՋԻՆՔԻ ԱՌԹԻՒ

Կազմակերպուած Փարիզահայ Տիկնանց Միութեան Որբերու Օգնութեան Մարմ – նին կողմէ:

ՀԻՆԳՇԱԲ. ՄԱՐՏ 24ԻՆ, ԺԱՄԸ 16.30ԻՆ

Փավիյօն Տօֆինի մէջ

Փափաքողները կրնան ծպտել իրենց ե– րախաները Լա Ֆոնթէնի առակները խոր– հրդանշող զգեստներով կամ միայն գլու– խով եւ արտասանել տալ անոնց իրենց ծպտումին համապատասխան առակը:

Որբերու Օգն. Մարմինը քաջալերուած նախորդ տարիներու իր գտած յաջողու – թենէն կը յուսայ որ այս անգամ եւս հանրութիւնը պիտի քաջալերէ զինքը, օգտակար հանդիսանալով Միութեան բա– րենպատակ ձեռնարկներուն:

## Կ'ՈՒԶՈՒԻՆ

Դպրոցասէրին համար կ'ուզուի այր եւ կին մը յարմար աշխատանքներու հա – մար: Դիմել վարժարանի տնօրէնութեան:

1, Bd. du Nord, LE RAINCY (S. et O.)

TÉL. 927 01-72



## ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

SURPRISE PARTY

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Պանեէօ Քաչանի խումբին կողմէ:

Կիրակի, Մարտ 20, ժամը 16էն 24:

167. RUE MONTMARTRE ի շքեղ սրահներուն մէջ: MÉTRO RUE MONMARTRE

Գեղարուեստական խնամուած բաժին

**Attractions**

Ճոխ պիւֆէ — Անակնկալներ

**ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ**

«ՎԱՐԴԱՆԱՆՑ»Ը

Կը ներկայացուի Առնուվիլի Հ. Յ. Դ. Նոր Սերունդին կողմէ:

Ապրիլ 3ին

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

ԿԻՐԱԿԻ, 20 ՄԱՐՏ, ԺԱՄԸ 16

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆր. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆր. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 15 Ն. Ֆր. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆր. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆր. | » » » |
| «ԾԱԽՈՒ Է» | 20 Ն. Ֆր. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազ– դերու համար են:

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է:

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան:





Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՍԳԱՏՕՆԸ
### ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Կազմակերպուած Վալանսի Հայ Ազգ. Միութեան կողմէ եւ հովանաւորութեամբ երեք Յարանուանութեանց պետերուն :

Ապրիլ 9, Շաբաթ երեկոյ ժամը ճիշդ 9ին, Թէաթր Միւնիսիփալի սրահին մէջ :

Կը նախագահէ Հայ Ազգ. Միութեան նախագահ Պ. Գ. ՍԻՆԱՊԵԱՆ

Ֆրանսերէն խօսք կ'առնէ Պ. ԼԵՒՈՆ ՄԱԹԷՈՍԵԱՆ :

Կը խօսին ՏԷՐ ՍԱՀԱԿ ԱՒԱԳ ՔՀՆՅ. ՊԱՊԻԿԵԱՆ: ՎԵՐԱՊ. ԱԲՐԱՀԱՄԵԱՆ, եւ ՊԱՊԵԱՆ վարդապետ :

Օրուան բանախօս՝ Պ. Ս. ՔԱՐԵԱՆ :

Ազգ. Միութիւնը կոչ կ'ուղղէ Վալանսի եւ շրջակայից հայ գաղութին բոլոր հայրենակիցներուն, որ իրենց ներկայութեամբ, յարգանքի տուրքը մատուցանեն մեր մէկ միլիոնէ աւելի անթաղ նահատակներուն, եւ ոգեկոչեն անոնց անմահ յիշատակը :

---

**ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ**
**ՎԱՐԺԱՐԱՆ**
ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ
ԿԻՐԱԿԻ, 20 ՄԱՐՏ, ԺԱՄԸ 16

---

## ՏԱՐԵԿԱՆ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ
## Ս. ՂԱԶԱՐ - ՎԵՆԵՏԻԿ
ԵՒ
ՇՐՋԱԿԱՅՔԸ

ՄԵԿՆՈՒՄ՝ Օգոստոս 6
ՎԵՐԱԴԱՐՁ՝ Օգոստոս 31

Հռոմի Ողիմպիական Խաղերը զբօսաշրջիկներու խճողում պիտի պատճառեն այս տարի Իտալիոյ մէջ :

Մեր խումբին հանգիստ ճամբորդութիւնը եւ լաւագոյն բնակութիւնը օր առաջ ապահովելու համար, կազմակերպութեան աշխատանքները սկսած են :

ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

Օրերը շուտ կ'անցնին, ցանկը շուտով կ'ամբողջանայ :

ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԵԱՆՑ ՀԱՄԱՐ ԴԻՄԵԼ՝

Պ. ԹԱՐՈՆ
58, Bd. Serrurier, PARIS 19 - Métro Pré-St-Gervais

Ն. ՄԱՅԻՍԵԱՆ
45, Rue de Trévise• PARIS 9 - Tél. TAI. 49-40
(Գաւիթին մէջ)

Յ. ՊԱՍՄԱՃԵԱՆ
11, Ave. Béranger, ARNOUVILLE-LES-GONESSE (S. et O.)

---

**Կ'ՈՒԶՈՒԻՆ**

Դպրոցասէրին համար կ'ուզուի այր եւ կին մը յարմար աշխատանքներու համար: Դիմել վարժարանի տնօրէնութեան:
1, Bd. du Nord, LE RAINCY (S. et O.)
TÉL. 927 01-72

---

**Կ'ՈՒԶՈՒԻ**

Երիտասարդ կին մը կամ օրիորդ մը, կարէ հասկցող իբրեւ վաճառքօ – մանիքանախոնիսթ :

ԴԻՄԵԼ՝

CONFECTION DE PARIS
19, BLD. ST. DENIS. PARIS 3e

---

**ԿԸ ՓՆՏՌՈՒԻ**

Լօզանէն Սաթենիկ Օհաննէսեան (Թիֆլիսցի) կը փնտռէ իր հայրը՝ Սարգիս Օհաննէսեան Ակոբօֆ, (դերձակ), որ 1930ին Փարիզ էր (Պէքոն լէ Պրիւյէռ), Սաթենիկի կնքահայրը եղած է Տոքթ. Ամատեան: Դիմել Յառաջի վարչութեան:

---

**ՍՐՃԱՐԱՆ-ՃԱՇԱՐԱՆ**
**Գ Ա Ռ Ն Ի Կ**
(ՏԻՒՅՄԷՃԵԱՆ)

Արեւելեան մասնաճաշեր
խնամուած կերակուրներ

**66, Rue de Bonnel, LYON (3e)**
TÉL. 60-37-92

Բաց է ամէն օր, նոյնիսկ կիրակի օրերը :

Լաւագոյն ընդունելութիւն, ապահովուած է բոլոր յաճախորդներուն :

Imprimerie Spéciale du journal « Haratch »

---

## ԱՊՐԻԼ 11-24 Ը
## ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Կ'ոգեկոչուի Ապրիլ 24ին :

Նախաձեռնութեամբ Ապրիլեան Սերունդի, Սալ Քառէի մէջ :

---

## ՍԻՓԱՆ - ԿՈՄԻՏԱՍ ԵՐԳՉԱԽՈՒՄԲ
Մեծ համերգ
ԿԻՐԱԿԻ՝ ՄԱՅԻՍ 15
Կը խնդրուի չխաչաձեւել

---

## ԺՈՂՈՎ - ԹԷՅԱՍԵՂԱՆ

Կապոյտ Խաչի Կրընոպլի մասնաճիւղին թէյասեղան – ընդհանուր ժողովը, Կիրակի, 20 Մարտ, ժամը 15ին, դպրոցին մէջ:

Կարեւոր օրակարգ :

Կը խնդրուի ընկերուհիներէն ճշդապահ ըլլալ : Ժամը 18ին կը սկսի թէյասեղանը, որուն սիրով կը հրաւիրուին նաեւ Խաչուհիներու ամուսինները, հաճելի օր մը անցընելու համար :

---

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ
## ՑԵՐԵԿՈՅԹ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի աշակերտուհիներու կողմէ :

Ապրիլ 3ին, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 15ին, Մէզօն տը լա Շըմիի մէջ, 28պիս, Րիւ Սէն Տօմինիք, մէթրօ էնվալիտ :

Հայերէն եւ ֆրանսերէն Թատերախաղեր: Երգախառն պատկեր :

ԵՐԳ, ՊԱՐ, ԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ :

Պիտի ներկայացուին նաեւ հայերէն եւ ֆրանսերէն Թատերախաղեր :

Մուտք՝ 6, 5 եւ 3 Ն. Ֆ.:

---

**Կ'ՈՒԶՈՒԻՆ**
OUVRIÈRES DOMICILE
spécialiste du Chemisier,
Belle Fabrication
Tél. : COM. 42-42

---

# ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

SURPRISE PARTY

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Պանեէօ Քաչանի խումբին կողմէ :
Կիրակի, Մարտ 20, ժամը 16էն 24 :

167. RUE MONTMARTRE ի շքեղ սրահներուն մէջ: MÉTRO RUE MONMARTRE

Գեղարուեստական խնամուած բաժին

**Attractions**

Ծոխ պիւֆէ — Անակնկալներ

---

Հիմնադիր-Տնօրէն ԳՐԻԳՈՐ ԹԵՒԱՆԵԱՆ

**ՃԱՇԱՐԱՆ ԵԱՐ**

Ֆրանսական – հայկական եւ կովկասեան ընտիր կերակուրներ

4, RUE ROBERT-ETIENNE
(Rue Marbeuf) PARIS - 8e
TÉL. : BAL. 31 21
ՇԱՆ ԶԷԼԻԶԷԻ ՍՐՏԻՆ ՎՐԱՅ
Métro : F. D. Roosevelt

Հաճելի մթնոլորտ

Առաջնակարգ կովկասեան խորովածներ, «շաշլիք», «քարսքի»

**Bar Américain**



---

# Établissements G. HAGOPIAN

## Կ. ՅԱԿՈԲԵԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ

**10, Rue du Caire, PARIS 2e** — **Tél. : CEN. 78-44 et CEN. 66-96**

★

ՏԱՏ ՅԱՐՄԱՐ ԳԻՆԵՐՈՎ — ՄԵԾԱՔԱՆԱԿ ԵՒ ՓՈՔՐԱՔԱՆԱԿ

ԿԸ ԾԱԽԷ ԶԵՏԵՒԵԱԼ ԿԵՐՊԱՍՆԵՐԸ

ԷՆԹԵՐԼՈՔ INTERLOCK — ԺԱՔԱՐ JACQUARD

ՄԱՅ ԱՆԿԼԷԶ MAILLE ANGLAISE — ՄԱՅ ՍԻՒԻՍ MAILLE SUISSE

ՖԻԼ Տ'ԷՔՈՍ FIL D'ÉCOSSE

ԲԱՄԲԱԿԷ ԶԻՒՍՈՒԱԾՔՆԵՐ

ՊՈՒՔԼԷԹ BOUCLETTE — ՊԱՆԼՈՆ BANLON

●

ԶԱՆԱԶԱՆ ՏԵՍԱԿՈՎ ԵՒ ԳՈՅՆՈՎ ԹՐԻՔՈՅԻ ՊԱՏՐԱՍՏ ԱՊՐԱՆՔՆԵՐ
ՎԵՐՋԻՆ ՆՈՐԱՁԵՒՈՒԹԻՒՆՆԵՐՈՎ

★

ԿԸ ԾԱԽԷ ՆԱԵՒ ԶՈՒՏ ԲՈՒՐԴԷ ԴԵՐՁԱՆ 2-28, 2-40, ԵՒ ԽԱՌՆ ԲՈՒՐԴՈՎ 1-26, 1-40

# ՅԱՐՄԱՐ ԳԻՆԵՐ
ԵՒ
# ՎՃԱՐՈՒՄԻ ԼԱՅՆ ԴԻՒՐՈՒԹԻՒՆՆԵՐ

ձուկ, բաղ եւն.: Իբրեւ ըմպելի՝ վօտկա, Վրաստանի ճերմակ գինի, Հայաստանի քոնեաք: Բաժակաճառեր խօսուեցան այս առթիւ ալ:

✕ Նախորդ իրիկուն շահեկան հանդիպում մը եղած է Էլիզէի մէջ Խրուշչեւի — Մոլէի եւ տը Կոլի միջեւ: Երբ առաջինը ըսած է Մոլէի «միշտ նոյն դէչ բնաւորութիւնը ունի՞ք» եւ Մոլէ կը հաստատէ, տը Կոլ անմիջապէս կը միջամտէ «տեսաք, ինք իր բերնով ըսաւ եւ ինծի հանդէպ ալ շատ կարծիք կը փոխէ», բայց Մոլէ կը պատասխանէ անմիջապէս.— «Ես ինքզինքս միշտ հաւատարիմ կը մնամ, զօրավար»:

✕ Անգլիական մամուլը լայն տեղ կու տայ տը Կոլ — Խրուշչեւ հանդիպման: Ոմանք գոհ, ոմանք դժգոհ, «Տէյլի Մէյլ» նոյնիսկ, Լորել եւ Հարտիի կը նմանցնէ երկու պետական պարագլուխները:

✕ Ֆրանսացի մը մերժած է առջի օր հանրակառք նստիլ որովհետեւ... Թշնամի պետութեան մը դրօշակը կար վրան:

―――o―――

## ՆՈՐԷՆ ՀԱՅԵՐՈՎ ԿԸ ԶԲԱՂԻՆ...

Երէկ արձագանգ հանդիսացած էինք «Ֆրանս — Սուար»ի մէկ լուրին հայրենիք ներգաղթած Հայերու վերադարձին մասին: «Լը Մոնտ»ի Մարտ 25ի թիւին մէջ, թերթին մասնաւոր թղթակիցը՝ Ալէնթիլեման, Պոնէն, աւելի մանրամասնօրէն կը ծանրանայ այս հարցին վրայ.— Յօդուածին խորագիրն է.— «Ըստ գերման ճամբորդի մը, Ֆրանսայէն ներգաղթած Հայերը կը յուսան որ Զօր. տը Կոլ իրենց ի նպաստ միջամտութիւն մը պիտի ընէ»: «Արեւմտեան մը, որ անհատական ճամբորդութիւն մը ըրած է Հայաստան, առիթներ ունեցած է խօսելու Ֆրանսայի հայ գաղութին անդամներուն հետ որոնք 1947ին, որոշած էին վերադառնալ իրենց նախնեաց երկիրը: Ծանօթ է որ երբ Փինօ, այն ատեն արտաքին նախարար, Երեւանէն անցաւ, շատ մը կամաւոր ներգաղթողներ իրեն դիմեցին դժգոհութիւն յայտնելով այն միջոցներուն դէմ որոնք կը գործադրուէին իրենց հանդէպ: Կ՚ուզէին որ ֆրանսական կառավարութիւնը միջամտէ խորհրդային կառավարութեան մօտ ձեռք ձգելու համար, իրենց մեկնումին ատեն խօսք տրուած վերաբերումը եւ նաեւ արտօնութիւն ստանալու համար Ֆրանսա վերադառնալու: Ֆրանսական մամուլին սեփական թղթակիցները ականատես եղած էին սրտաճմլիկ տեսարաններու եւ խօսած շատերու հետ: Պ. Փինօ, այն ատեն միջամտեց Երեւանի իշխանութեանց եւ Մոլոթովի մօտ (այն ատեն՝ արտաքին նախարար) ֆրանսախօս հայ ընտանիքներու համար. բայց կիսկատար պատասխաններ ստացաւ: Երեւանի հանդիպումին միակ արդիւնքը բացասական եղաւ: Բոլոր Հայերը որոնց նկարը հրատարակած էր շաբաթաթերթ մը, բացի մէկ հատէ, ոստիկանութեան կողմէ հետապնդուեցան եւ աշխատանքի կայաններ ղրկուեցան: Անոնց ազգականներէն 3000 հոգի յաջողած են խնդրանքներ հասցնել Մոսկուայի ֆրանսական դեսպանատունը, բայց այս վերջինը անկարող է ընդ առաջ երթալու իրենց դիմումին հակառակ անոր որ, ըստ միջազգային օրէնքին 1947-ին ներգաղթողները, հարկ եղած ձեւակերպութիւնները չեն կատարած ֆրանսական հպատակութենէն հրաժարելու համար եւ միշտ ֆրանսացի նկատուած են:

«Միշտ նոյն աղբիւրին համաձայն, ֆրանսական ծագում ունեցող հայ գաղութը. (ԽՄԲ.— Ընդգծումը մեր կողմէ) մասնաւոր հսկողութեան ենթարկուած է եւ կ՚ապրի նախնական պայմաններու մէջ, խորհրդային քաղաքացիներու միջինէն շատ վար: Անոնց տեղափոխութիւնները սահմանուած են եւ խորհրդային ընկերութեան հետ իրենց անհաղորդութիւնը մեծ յուսալքում մը առաջ բերած է իրենց մօտ եւ կը թարգմանուին ծայրայեղ արտայայտութիւններով, փախուստի յուսահատ փորձերով: Կարելի է երեւակայել, թէ այս մթնոլորտին մէջ, ինչ արձագանգ գտած է Խրուշչեւի Ֆրանսա այցելութիւնը: Անկէ կը յուսան իրենց կեանքին բարելաւումը, տեսակ մը «ինքնորոշում» որպէսզի դուրս ելլեն աքսորէ մը որուն դատապարտուած են իրենց չափազանց վստահութեան պատճառաւ: Ամէնքը տը Կոլի վրայ կը հաշուեն, որ Խրուշչեւի հետ խօսի այս մասին եւ պնդէ անոր մօտ որպէսզի մարդկային եւ ազնիւ լուծում մը գտնէ»:

## "ՅԱՌԱՋ" ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

Ժան եւ Քոլէթ Այանեան վեց ամսուան «Յառաջ» կը նուիրեն իրենց հօր՝ Գրիգոր Այանեանի:

## —ՑՈՒՇԱՏԵՏՐ—

ՓԱՐԻԶ.— Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղին ընդհ. ժողովը այս Շաբաթ կէս օրէ ետք ժամը չորսին, ընկերուհի Տիկին Ագնիւ Գազազեանի բնակարանը, 6 Րիւ Սէն Սիւլփիս, Փարիզ (6), Բ. յարկ, մէթրօ Օտէօն: Օրակարգ.— Շրջաբերականներու ընթերցում, պարահանդէսի հաշուեքննիչին զեկուցումը, նաեւ կարեւոր ընթացիկ հարցեր: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

### ԹԷՅԱՍԵՂԱՆ ԻՍԻԻ ՄԷՋ

Ֆ. Կ. Խաչի Իսիի մասնաճիւղը, Խըրիմեան վարժարանի վերանորոգման առթիւ, կազմակերպած է թէյասեղան մը, ի յարգանս դպրոցին անձնուիրաբար աշխատողներուն, ինչպէս նաեւ բոլոր օժանդակող հայրենակիցներուն:

Այս Կիրակի ժամը 16ին, Խրիմեան սրահին մէջ:

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Պ. Հրանդ Գալֆայեան կը ծանուցանէ թէ այս Կիրակի առաւօտ, ժամը 10ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իր տատարախտ կնոջ՝

ԹԵՐԵԶ ԳԱԼՖԱՅԵԱՆԻ

(ծնեալ Ալթունեան), մահուան քառասունքին առթիւ:

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԻՒՆ Ի ՊԱՏԻՒ ԱՐԱՄ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆԻ

Հովանաւորութեամբ Կաթ. Պատուիրակ ՍԵՐՈՎԲԷ ԵՊ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ եւ մասնակցութեամբ Փարիզի հայ գաղութին ներկայացուցիչներուն:

29 Մարտ, Երեքշաբթի երեկոյ ժամը 20.30ին: ՓԱԼԷ Տ'ՕՐՍԷԻ մէջ:

Փափաքողները կրնան մասնակցիլ ստանալով հրաւիրատոմսեր եկեղեցւոյ դիւանէն: Մասնակցութեան բաժին 10 Ն. Ֆ.:

### ՆՈՒԷՐ

★

Այրի Տիկին Արմենուհի եւ Պ. Լ. Քէնտիրեան Ոսկիան Քէնտիրեանի մահուան քառասունքի առթիւ «Յառաջ»ի տարածման համար կը նուիրեն տասնական Ն. Ֆ.:

### ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Շաւիլի խումբին կողմէ:

Կիրակի, 27 Մարտ, ժամը 16էն 24, Շաւիլի դպրոցի սրահին մէջ:

Գեղարուեստական բաժին: Ճոխ պիւֆէ:

քը հիւրասիրելու գացած էին Ֆրանսայի համայնավար պարագլուխներու ամբողջ չքախումբը՝ Թոռէզ, Տիւքլօ եւ ուրիշ-ներ: Խրուշչեւ եւ Թոռէզ ողջագուրուած են ռուսական ձեւով այսինքն բերան բե-րանի համբուրելով ...:

X Քէ տ'Օրսէի մէջ Ուրբաթ կէսօրէ ետք, Խրուշչեւ ուշագրաւ յայ-տարարութիւն մը ըրած է, «Ֆրանսա եւ խորհրդային բարեկամութեան» ան-դամ ներկայ ծերակուտականնե-րուն: Սովորականին պէս յարձակելէ ետք Գերմանիոյ եւ Ատընաուըրի վրայ, աւելցուցած է, թէ Սթալին իրաւունք ունէր դաշնագիր մը կնքելու Գերմանա-ցիներուն հետ, 1939ին: Այս առթիւ ամ-բաստանած է Անգլիան եւ Ֆրանսան հաւասարապէս որ փորձեցին Հիթլերը Խորհրդային Միութեան դէմ հանել:

Խրուշչեւ Ուրբաթ օր այցելեց նաեւ Մոնէի պալատը ուր Ֆրանքեւռուս պատ-մութեան դասի մը արժանացաւ ... Մալ-րոյի կողմէ:

X Երկու կիներ Տիկին Խրուշչեւին դի-մած են առջի օր երբ Լուվրի Թանգարանը կ'այցելէր, առաջինը Հայուհի մը՝ Փօլին Պ..., 19 տարեկան որ փորձած է նամակ մը տալ որուն մէջ կը խնդրէ որ Հայաս-տան գտնուող մեծ քոյրը կարենայ Ֆը-րանսա գալ, արձակուրդի: Երկրորդը՝ Նա-ցի նախկին նախարար Շեռի աղջիկը որ հօրը ազատագրումը կը խնդրէ:

X Օրէ օր կը լուծին պաշտօնական այ-ցին անպաշտօն մասերը: Առջի օր երբ Խրուշչեւ ընդունած է դիւանագիտական մարմինը, ամէն մէկ դեսպանին խօսք մը ունեցած է, երբեմն սրամիտ: Յունաս-տանի դեսպանին ըսած է «եղբայր ենք Ցիսուսի մէջ» եւ աւելցուցած է «անշուշտ դուք բերիք մեզի քրիստոնէութիւնը եւ շատ երախտապարտ ենք»:

X Ուրբաթ իրիկուն օփերա գացին Քարմէնի ներկայացման:

X Խրուշչեւ Շաբաթ օր Պորտօ, Լաք եւ Փօ մեկնեցաւ:

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐ ՍԱՀԱԿ ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆԻ ՄԱՀՈՒԱՆ ԱՌԹԻՒ

★

ԳԱՀԻՐԷ.— Մարտ 23, ցաւակցութիւն-ներ մեր վեթերան ընկերոջ դառն կորուս-տին առթիւ:

Հ. Յ. Դ. ԵԳԻՊՏՈՍԻ Կ. ԿՈՄԻՏԷ

X

ԳԱՀԻՐԷ, Մարտ 23: Կ'ողբանք Սահա-կի կսկծալի կորուստը:

ՆԱԹԱԼԻԱ ԼԱՉԵԱՆ

X

ՊՈՍԹԸՆ, 23 Մարտ.— Անկեղծ ցա-ւակցութիւններ սիրեցեալ վեթերան ըն-կեր ՍԱՀԱԿ ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆԻ մահ-ուան առթիւ ձեզի, Տիկին Զարուհիին եւ Օր. Ֆլորիային:

Հ. Յ. Դ. ԱՄԵՐԻԿԱՅԻ Կ. ԿՈՄԻՏԷ

X

ՆԻՒ ԵՈՐՔ, 23 Մարտ.— Ընդունեցէք մեր խոր ցաւակցութիւնները Ս. ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆԻ մահուան առթիւ: Ող-բացեալը անկեղծ հայրենասէր մըն էր եւ անձնուիրաբար կը գործակցէր բոլոր ա-նոնց հետ, որոնք կ'աշխատէին իրենց ժո-ղովուրդներու ազատագրման համար:

Ամերիկեան կոմիտէին կողմէ ՍԱՐ-ՃԸՆԹ, ՔԻՆՆԻՀՈԼՄ, ՓԷՉ, ՈՒԻԼԵԸՄՍ

X

ՄԻՒՆԻԽԷՆ եւս Ամերիկեան կոմիտէի իր բարեկամները ցաւակցական հեռագիր մը ուղղած են ողբացեալ ընկերոջ ընտա-նիքին:

X

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. Անի կոմիտէն եւ իր ընկերները կ'ողբան վաղաժամ մահը ԸՆԿԵՐ ՍԱՀԱԿ ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆԻ եւ իրենց ցաւակցութիւնները կը յայտ-նեն Տիկին Տէր Թովմասեանի եւ ընտանե-կան պարագաներուն:

X

ՍԷՆԹ ԷԹԻԷՆ.— Հ. Յ. Դ. «Անտօք» ենթակոմիտէն յարգանքով կը խոնարհի յեղափոխական գործիչ եւ վեթերան ընկ. ՍԱՀԱԿ ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆԻ թարմ հողա-կոյտին առջեւ եւ խոր ցաւակցութիւննե-րը կը յայտնէ իր ընտանեկան պարագա-ներուն:

X

ՆԻՍ.— Հ. Յ. Դ. «Գէորգ Չաւուշ» խումբը խոր վշտով կ'ողբայ վաղաժամ մահը ընկեր ՍԱՀԱԿ ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆԻ

## ԸՆԿԵՐ ԳԱՍՊԱՐ ԻՓԷԿԵԱՆԻ ՄԱՀՈՒԱՆ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ ԱՌԹԻՒ

Ընկեր Գ. Իփէկեանի մահուան ութե-րորդ տարեդարձի առթիւ Այրի Տիկին Հռիփսիմէ Իփէկեան եւ զաւակները 15 Ն. Ֆ. կը նուիրեն Մշակոյթի Տան եւ 15 Ն. Ֆ. Կապոյտ Խաչի կայանին: (Ստանալ «Յառաջ»էն):

## ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԻՒՆ Ի ՊԱՏԻՒ ԱՐԱՄ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆԻ

Հովանաւորութեամբ Կաթ. Պատուիրակ ՍԵՐՈՎԲԷ ԵՊ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ եւ մասնակցութեամբ Փարիզի հայ գաղութին ներկայացուցիչներուն:

29 Մարտ, Երեքշաբթի երեկոյ ժամը 20.30ին: ՓԱԼԷ Տ'ՕՐՍԷԻ մէջ:

Փափաքողները կրնան մասնակցիլ ստանալով հրաւիրատոմսեր եկեղեցւոյ դի-ւանէն:

Մասնակցութեան բաժին 10 Ն. Ֆ.:



եւ կը խոնարհի վաստակաւոր ընկերոջ յիշատակին առջեւ:

X

ՏԷՍԻՆ.— Հ. Յ. Դ. կոմիտէն եւ Փոն տը Շէրիւի «Անդրանիկ» խումբը իրենց խոր վիշտը կը յայտնեն վեթերան ընկեր ՍԱՀԱԿ ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆԻ անակնկալ ու դառն մահուան համար: Ցաւակցութիւն-ներ Տիկին Տէր Թովմասեանի, Օր. Ֆլո-րա Շէօհլէեանի եւ ընտանեկան բոլոր պարագաներուն:

X

ՄԻՒՆԻԽ, 21 Մարտ.— «Ազատագրու-թիւն» ռատիօկայանի Հայկական խմբ-բագրութեան բոլոր աշխատակիցներս խոր կսկիծ եւ անսահման վիշտ պատ-ճառեց, մեր առօրեայ աշխատանքի հետ հոգատար գուրգուրանքով ու բարի խոր-հուրդներով միշտ կապուած, ջանասէր հանրային գործիչ ՍԱՀԱԿ ՏԷՐ ԹՈՎՄԱՍ-ԵԱՆԻ վաղաժամ մահը:

Մեր սրտաբուխ ցաւակցութիւնը Հ. Յ. Դաշնակցութեան, որին զոհաբերու-թեամբ ծառայեց հանգուցեալը իր բո-վանդակ կեանքի ընթացքում:

Ամբողջ հոգով բաժանում ենք հան-գուցեալի համայն սգակիր պարագաների կսկիծն ու ողբը:

X

Ֆ. Կ. ԽԱՉԻ Անկէնի մասնաճիւղը իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ ՍԱՀԱԿ ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆԻ դառնակսկիծ մահուան առթիւ, ողբաց-եալին ընտանիքին:

X

ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն փոխան ծաղկեպսակի հարիւր Ն. Ֆ. կը նուիրէ Մշակոյթի Տան:

X

Ֆ. Կ. ԽԱՉԻ Կեդր. վարչութիւնը շը-նորհակալութեամբ ստացած է Տիկին Աննիկ Սարաճեանէ, փոխան ծաղկեպսա-կի, ՍԱՀԱԿ ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆԻ դառն կորուստին առթիւ, 30 Ն. Ֆ.:

ԿՐԸՆՈՊԼԻ Հայ Ազգ. Եկեղեց. Միու-թիւնը Կիրակի Մարտ 16ին կէսօրէ ետք գումարեց իր տարեկան ընդհ. ժողովը: Վարչութիւնը իր երկու տարուան շրջա-նը լրացուցած ըլլալով նոր վարչութիւնը ընտրուեցաւ հետեւեալ կազմով՝

Նախագահ՝ Պ. Տիգրան Սթամպուլեան, քարտուղար՝ Պ. Սիսակ Սիսլեան, փոխ-քարտուղար՝ Պ. Խորէն Աւազեան, գան-ձապահ՝ Պ. Կարապետ Մարանճեան, հաշուապահ՝ Պ. Վարդան Բաբախեան, խորհրդականներ՝ Պ. Պ. Միշէլ Նալ-պանտեան եւ Երուանդ Մարաշլեան:

Կը խնդրուի նկատի ունենալ Միութեա-նըս նոր հասցէն՝ Ս. Սիսլեան, 17, Քուր Ժան Ժօրէս, Կրընոպլը:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Ընկեր Սահակ Տէր Թովմասեանի կըս-կըծալի մահուան առթիւ Ատրինէ եւ Վա-հէ Մանուկեան յիսուն Ն. Ֆ. կը նուի-րեն Մշակոյթի Տան: (Ստանալ «Յա-ռաջ»էն):

## ՆՈՒԷՐ

Ֆ. Կ. Խաչի Փորթ տ'Իթալիի մասնա-ճիւղը, շնորհակալութեամբ ստացած է Պ. Արամ Զաքրեանէ քսան Ն. Ֆ. եւ Տի-կին Ս. Սարգիսեանէ տասը Ն. Ֆ., որ-Տիկին Աստղիկ Զաքրեանի մահուան քա-ռասունքին առթիւ: Նոյն առթիւ Պ. Ա-րամ Զաքրեանէ տասը Ն. Ֆ. Ժանթիյի Հայկական դպրոցին:







Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐ
## ՍԱՀԱԿ ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆԻ
## ՄԱՀՈՒԱՆ ԱՌԹԻՒ

*ԼՈՆՏՈՆԻ Հ. Յ. Դ. Նաւասարդեան նորակազմ կոմիտէն ցաւակցութիւններ կը յայտնէ ընկեր ՍԱՀԱԿ ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆԻ կսկծալի մահուան առթիւ, ողբացեալին ընտանիքին եւ ընկերներուն :*

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

*Տէր եւ Տիկին Հայկ Զրուանդեան* 50 *Ն. Ֆ. կը նուիրեն Մշակոյթի Տան, ընկեր* Սահակ Տէր Թովմասեանի *մահուան առ-թիւ :*

## Հ. Յ. Դ.
### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*ՓԱՐԻԶ. — Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ներկայացուցչական ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջաններու, մարմիններու եւ խումբերու ներկայացուցիչները, այսՇաբաթ, ժամը 21ին, Մշակոյթի Տան մեծ սրահին մէջ: ԿԱՐԵՒՈՐ ՕՐԱԿԱՐԳ :*

### ԾՆՈՒՆԴ

*Փոքրիկն Այտա Փափազեան ուրախու-թեամբ կը ծանուցանէ իր եղբօր՝* Միքայէլի *ծնունդը*, 25 *Մարտ*, 1960*ին, Իսի լէ Մուլինօ: Այս առթիւ Տէր եւ Տիկին Սուրէն Փափազեան քսան Ն. Ֆ. կը նուիրեն Մշակոյթի Տան, Նոր Սերունդի «Օնպաշեան» սրահին: (Ստանալ «Յառաջ»էն) :*

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*Հ. Յ. Դ. Քրիստափոր եւ Ռոստոմ խումբերու հանդէս – գինեձօնը՝*
*ԱՊՐԻԼ 10ԻՆ*
ժամը 15ին :
*Յաջորդով՝ մանրամասնութիւններ :*

### ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻՆ

*Նիսէն Տիկին Ֆիլօր Փափազեան կը նուիրէ քսան Ն. Ֆ., Կապոյտ Խաչի Ալֆորվիլի մասնաճիւղին, տարարախտ* Միշէլ Պաղտասարեանի *մահուան առթիւ :*

## ԳԻՆԵՁՕՆ

*Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Սէնթ Էթիէնի « Բարգէն Սիւնի» խումբը իր ակումբին պաշտօնական բացումին առթիւ, Ապրիլ 2, Շաբաթ ժամը 19ին, կազմակերպած է գինեձօն մը, որուն սիրով կը հրաւիրուին շրջանի ընկերներն ու բոլոր այն ազգայինները, որոնք կը հետաքրքրուին Նոր Սերունդի շարժումով ու գործունէութեամբ :*
*Գեղարուեստական բաժին :*

### ԸՆՏԱՆԵԿԱՆ ԽՆՋՈՅՔ

*Կազմակերպուած Կապ. Խաչի Վիէնի մասնաճիւղին կողմէ : Այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին,* Համօ Օհանջանեան *սրահին մէջ:*
*Գեղարուեստական խնամուած բաժին : Կիւլպէնկ (Կիւլը) սիրայօժար մասնակցութիւնը կը բերէ իր* փանթէզիներով :
Մուտքը ազատ է :

### ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ՊՈՐՏՕՅԻ ՄԷՋ

*Նախաձեռնութեամբ խումբ մը սիրողներու, կը բեմադրուի՝*
*«ՋԱՐՇԸԼԸ ԱՐԹԻՆ ԱՂԱ»ն*
*(Կատակերգութիւն 3 արար)*
*Այս Կիրակի ժամը 15ին, Շամպր տը Քոմերսի ընդարձակ սրահը,* 8, Րիւ Տէթրուա Քոնիլ, Պորտօ :



## ԹԱՏԵՐԱԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

ԱՌՆՈՒՎԻԼԻ Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ «ԿԱՌՎԱՐԵՆՑ» ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ
ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԱՌՆՈՒՎԻԼԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ
Կիրակի, 3 Ապրիլ, ժամը 15ին, Սարսէլի քաղաքապետարանի սրահներուն մէջ
**Salle des Fêtes de Sarcelles - Place du XI Novembre**
*Կը ներկայացուի Հայոց պատմութեան անմոռանալի էջերէն՝*

ԱՒԱՐԱՅՐԻ **ՎԱՐԴԱՆԱՆՑ** ԱՐԾՒԻԸ

(Ողբերգութիւն 5 արար եւ 4 պատկեր)
ՂԵԿԱՎԱՐՈՒԹԻՒՆ Պ. ՄԻՀՐԱՆ ՇԻՇՄԱՆԵԱՆԻ
ԲԵՄԱԴՐՈՒԹԻՒՆ Պ. ՏԻԳՐԱՆ ԹՈՐՈՍԵԱՆԻ եւ ՏԻԿԻՆ ԱԼԻՍ ԷՍՔԻՃԵԱՆԻ
Սիրայօժար մասնակցութեամբ
*ՍԻՓԱՆ – ԿՈՄԻՏԱՍ երգչախումբի, ղեկավարութեամբ ԿԱՐՊԻՍ ԱՓՐԻԿԵԱՆի եւ մասնաճիւղիս լաւագոյն ուժերուն*

*Հաղորդակց. միջոցներ. —* Փոքր տը լա Շափելէն առնել 268 թիւ հանրակառքը դէպի *Վիլիէ լը պէլ* եւ ժամը 13.45 եւ 15.10, իջնել Վիլիէ լը Պէլ *եւ* առնել 268 թիւ հանրակառքը : իջնել Սարսէլ «Նոյեմբեր 11ի» հրապարակը կամ կառախումբ՝ *Կառ տիւ Նոռէն*

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

*Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Սէնթ Էթիէնի «Բարգէն Սիւնի» խումբի կողմէ, 2 Ապրիլ, Շաբաթ ժամը 21էն մինչեւ լոյս,* Փէրկոլա (Ռոն Փուէն) *շքեղ սրահին մէջ, Անտրէ Քոնսթան եւ Ֆրէտ Պովի անուանի զոյգ նուագախումբերը պիտի ստեղծեն չատ հաճելի ժամեր եւ զանազան անակնկալներ : Հայկական մթնոլորտ եւ առատ կերուխում :*

## ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ
### ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

*Կազմակերպուած Հ. Մ. Ը. Մ.-ի կողմէ: Ապրիլ 2ին, Շաբաթ երեկոյեան ժամը 21ին: Առնոնվիլլի մեծ սրահին մէջ :*
*(Փառք էքսփոզիսիօն) :*
*Այս առթիւ վարձուած է տեղւոյս հանրածանօթ* Ժիլ Ծօլայի *նուագախումբը :*
*Կը հրաւիրուին Կեդր. Ֆրանսայի քոյր մասնաճիւղերուն հայ մարզիկները :*

*ԼՈՅՍ ՏԵՍԱՒ*

**Անդաստան**

*ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ԵՒ ԱՐՈՒԵՍՏԻ*
*Թիւ* 11, 1960
*Խմբագիր՝ ԲԻՒԶԱՆԴ ԹՕՓԱԼԵԱՆ*
*Գին՝* 12 *Ն. Ֆ., (*4 *տոլար արտասահմանի համար) :*
**Andastan**
46, RUE RICHER. PARIS, 9.

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

*Հերթական դասախօսութիւնը այս Չորեքշաբթի գիշեր, ժամը 21ին, Քատէի սրահը: Կը խօսի Հ. ԲԱԼՈՒԵԱՆ, նիւթը՝* « Արմէն Տիգրանեան եւ իր Դաւիթ Բէկ օփերան» : *Պիտի տրուի այս ներկայացման երաժշտութիւնը ամբողջութեամբ : Նիւթը երկար ըլլալով պիտի սկսինք ճիշդ որոշուած ժամուն :*



## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի աշակերտուհիներու կողմէ :

*Ապրիլ 3ին, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 15ին,* Մէզօն տը լա Շըմիի մէջ, 28պիս, Րիւ Սէն Տոմինիք, մէթրօ Էնվալիտ :

*Հայերէն եւ ֆրանսերէն Թատերախաղեր : Երգախառն պատկերներ եւ արտասանութիւն :*

Մուտք՝ 6, 5 եւ 3 Ն. Ֆ. :

### ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԿԱՅԱՆ ՄԱՐՍԷՅԼ

*Պզտիկներու արձանագրութիւնները պիտի սկսին Ապրիլ մէկին եւ պիտի փակուին Մայիսի վերջը:*

*Այն ծնողքները որոնք կ'ուզեն արձանագրել տալ Կապ. Խաչին, Դիմել հետեւեալ հասցէներուն :*

Մարսէյլի քաղաք *Տիկին Թուլթէլեանի*, 4 *Րիւ Փարմանթիէ*, Պոմոն, *Տիկին Սօլաքեանի* 23 *Պուլվ. տը Պոմոն, Տիկին Շալճեան Սէն Ժերոմ :*

## ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ԵՒ ՇՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

*Նախաձեռնութեամբ Ֆ. Կապ. Խաչի Լիոնի մասնաճիւղի :*
*Այս Շաբաթ երեկոյեան ժամը 9էն մինչեւ լոյս, Պէրիէ Միյէ շքեղ սրահներուն մէջ, Փլաս Պէլքուռ :*
*Գեղարուեստական բաժին եւ հաճելի անակնկալներ : Պիտի երգէ* Տիկին Արաքսի Մուրատեան *(Փարիզէն), իրենց մասնակցութիւնը կը բերէ* Տէր եւ Տիկին Սուքավէլեանի *պարախումբը, Վալս* Էմփէրիալ, Ֆրէնչ քանքան *եւ հայկական պարերով : Ինչպէս նաեւ Թարարէն Հաքէլեան եղբայրներ պիտի նուագեն ու երգեն հայկական եղանակներ :*
*Ընտանեկան ուրախ զուարթ մթնոլորտ:*

## ՀԱՅԱԾԷՍ Ս. ՊԱՏԱՐԱԳ
### ՎԱՏԻԿԱՆԻ ՁԱՅՆԱՍՓԻՒՌԷՆ

*Այս Կիրակի 3 Ապրիլ, ժամը 10.30ին, Հայկական հանդիսաւոր Ս. պատարագ եւ քարոզ՝ Վատիկանի ձայնասփիւռէն :*
*Պիտի քարոզէ Գեր. Ներսէս Վրդ. Սեթեան՝ Տեսուչ Հռոմի Լեւոնեան Հայ վարժարանի : Միջին ալիք՝* 196 *մ., կարճ ալիք՝* 19.84, 25.67, 31.10 :

